Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 14 ՀՈՒԼԻՍ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս 3—52—78:



# ԱՆԱՍՈՒՆՆԵՐՆ ԱՊԱՀՈՎԵՆՔ ԱՌԱՏ ԿԵՐՈՎ

Ս.. ԴԱՎԹՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության կերահայթայթման վարչության գլխավոր գյուղատնտես

*Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորությունը և գյուղատնտեսության բազմահազար մյուս աշխատավորները մեծագույն խանդավառությամբ ընդունեցին ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումը։ Նրանք նոր թափով են ծավալել սոցիալիստական մրցությունը մշակվող բոլոր կուլտուրաներից բարձր բերք ստանալու համար։*

*Արդեն կոլտնտեսություններում և սովխոզներում սկսվել են խոտհնձի և կերերի սիլոսացման մասսայական աշխատանքները։ Այս տարի գյուղատնտեսական աշխատանքների պետական պլանի համաձայն կոլտնտեսությունները կատարելու են բնական և*

ցանովի խոտհարքների ավելի շատ հունձ և պատրաստելու են ավելի շատ սիլոս, քան անցյալ տարի։

Այս լույս և կարևորագույն առաջադրանքը ժամանակին կատարելով կոլտնտեսությունները 1954—1955 թվականի մսուրային շրջանում կապահովեն անասունների կուշտ և անկորուստ ձմեռումը։

Պարտիան և կառավարությունը բազմիցս խնդիր են դրել գյուղատնտեսության բնագավառի բոլոր աշխատողների առջև, խոտհնձի և կերերի սիլոսացման աշխատանքները հիմնականում ավարտել սեղմ ժամկետներում՝ մինչև հասկավոր կուլտուրաների բերքահավաքի սկսվելը։

Խոտհնձի և կերերի սիլոսացման աշխատանքների հաջող կատարումն ապահովելու կայաններն այս տարի կոլտնտեսություննե-օգտագործել գյուղատնտեսական բոլոր մեքենաներն ու գործիքները։

Ռեսպուբլիկայի մեքենա-տրակտորային կայաններն այս տարի կոլտնտեսություններում հնձելու են հարյուր հազարավոր հեկտար խոտհարք և պատրաստելու են հսկայական քանակությամբ սիլոս։

Սահմանված առաջադրանքների կատարման համար ստեղծված են բոլոր անհրաժեշտ



պայմանները։ Մեքենա-տրակտորային կայանները հագեցված են նորագույն մեքենաներով, ինչպես նաև կոմպլեկտավորված են մեխանիզատորական լավագույն կադրերով։

Խոտհնձի աշխատանքների հաջող նախապատրաստմամբ մեծ չափով պայմանավորված է դաշտավարական և կերահայթայթման բրիգադաների ներսում աշխատանքի ճիշտ կազմակերպումից, հնձվորների, հավաքողների, չորացնողների, փոխադրողների և օժանդակ ուժերի ճիշտ դասավորումից ըստ առանձին աշխատանքների տեղամասերի։

Անցյալ տարի մի շարք կոլտնտեսություններ խոտհնձի աշխատանքները վատ կազմակերպելու հետևանքով չկարողացան կուտակել անհրաժեշտ քանակությամբ անասնակեր, որը բացասաբար ազդեց հանրային հոտի ձմեռումը հաջող կազմակերպելու գործի վրա։

Այս գյուղատնտեսական տարում նման սխալներ թույլ չտալու համար անհրաժեշտ է խոտհնձի աշխատանքները կատարել լավագույն ժամկետներում, այն ավարտել մինչև հասկավոր կուլտուրաների բերքահավաքը։

Ինչպես հայտնի է, բոլոր կոլտնտեսություններն ունեն խոտհնձի և սիլոսի կուտակման օրացուցային պլան, որտեղ հան-

գամանորեն նշված են, թե որ օրը քանի հեկտար հունձ պետք է կատարվի, քանի տոննա սիլոս կուտակվի և թե ինչպես են օգտագործվելու խոտ հավաքող մեքենաներն ու աշխատող ձեռքերը: Նշված են խոտհնձի և սիլոսացման աշխատանքները սկսելու և ավարտելու ժամկետները:

Անհրաժեշտ է այդ պլանի կատարման ընթացքի մասին պարբերաբար տեղյակ պահել կոլտնտեսականներին, հաշվի առնել նրանց պրակտիկ և օգտակար առաջարկությունները, խոտհնձի, չորացման, փոխադրման և կերերի սիլոսացման աշխատանքները լավ կազմակերպելու, նորանոր տարածություններում խոտհունձ կազմակերպելու համար:

Խոտհունձը պետք է կատարել հիմնական խոտաբույսերի ծաղկման շրջանում, սեղմ ժամկետներում: Խոտի բերքահավաքի աշխատանքներում թույլ չտալ, որ խզում առաջանա խոտհնձի, խոտի չորացման, փոխադրման ու դիզելու աշխատանքների միջև:

Այդ գործին մեծ չափով կարող է օգնել առաջավոր բրիգադների ու կոլտնտեսականների անցյալ տարվա աշխատանքի լավագույն փորձը: Հարկավոր է առաջավոր փորձը մասսայականացնել կոլտնտեսական-



ների շրջանում, այն հասցնել խոտհնձի բնագավառում աշխատող յուրաքանչյուր կոլտնտեսականի:

Անասունների համար կերի առատ պաշարներ կուտակելու նպատակով հարկավոր է մանրամասն ուսումնասիրել այն բոլոր աղբյուրները, որտեղից կարելի է կեր հայթայթել, իսկ այդպիսի հնարավորություններ մեզ մոտ շատ կան:

Խոտի հունձ պետք է կատարել անտառային բացատներում, այգիներում, միջնակներում, բարձր բերքատու արտերում, ճանապարհների եզրերին և այն բոլոր վայրերում, որտեղ հնարավոր է խոտ հնձել:

Վերջին տարիների ընթացքում Սիսիանի, Մարտունու, Կիրովականի, Սևանի շրջանների մի շարք առաջավոր կոլտնտեսություններ ջրովի և ցածրադիր խոնավ բնական խոտհարքներում կազմակերպում են խոտի երկրորդ հունձ: Անհրաժեշտ է, որ այդ պրակտիկան այս տարի լայն չափով կիրառվի ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլտնտեսություններում:

Խոտհնձի աշխատանքներին զուգընթաց պետք է կուտակված խոտը փոխադրել անասնապահական ֆերմաները և կազմակերպել նրա կանոնավոր դիզումն ու անկորուստ

պահպանումը, կշռելու կամ չափումների միջոցով պարզել կուտակված խոտի քանակը, մուտք գրել կոլտնտեսության հաշվապահությունում և հատուկ ակտերով հանձնել անասնակերի պահեստապետներին կամ ֆերմաների վարիչներին։

Անասունների ձմեռումը հաջող կազմակերպելու և մթերատվությունը բարձրացնելու գործում խոշոր նշանակություն ունի սիլոսը, որը արժեքավոր հյութալի կեր է, իր մեջ լրիվ պահպանում է կանաչ մասսայի սննդարար հատկությունները։ Սիլոսը մեծ չափերով բարձրացնում է ոչ միայն կովերի կաթնատվությունը, այլև նպաստում է մատղաշի կանոնավոր աճմանը։

Կերերի սիլոսացման աշխատանքը պետք է կազմակերպել խնամքով։ Լրիվ բեռնավորվածությամբ աշխատեցնել բոլոր սիլոսահատ մեքենաները։

Մեքենա-տրակտորային կայանները հագեցված լինելով գյուղատնտեսական նորագույն տեխնիկայով, բազմապիսի մեքենաներով ու շարժիչներով, գյուղատնտեսության գրեթե բոլոր աշխատատար պրոցեսները ենթարկում են մեքենայացման։

Խոտհնձի և կերերի սիլոսացման պլանների կատարման և գերակատարման գործում



խոշոր դեր է խաղում սոցիալիստական մրցությունը։ Անհրաժեշտ է սիստեմատիկաբար մասսայականացնել մրցության արդյունքները, խրախուսել առաջավոր հնձվորներին, մեքենավարներին, արմատավորել նրանց աշխատանքի լավագույն փորձը, օգնել ետ մնացողներին՝ առաջավորներին հասնելու համար, բացատրել կոլտնտեսականներին, որ հանրային անասնապահությունը կերով ապահովելու գործը ունի պետական կարևորագույն նշանակություն։

Կենսագործելով անասնաբուծության հետագա զարգացման վերաբերյալ պարտիայի և կառավարության որոշումները, ռեսպուբլիկայի կոլտնտեսականներն ու մեխանիզատորները պատվով կկատարեն ստանձնած պարտավորությունները՝ անասուններին կապահովեն առատ կերով։

---

# ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՕՐԸ

Ա. ԹԻՐԱՔՅԱՆ

Օգոստոսի 1-ը Երկաթուղայինի Համամիութենական օրն է։ Ամեն տարի մեր մեծ երկրի աշխատավորները հանդիսավոր պայմաններում տոնում են այդ օրը։ Նրանք մեծարում են սովետական երկաթուղայիններին, որոնք անձնվեր աշխատանք են կատարում մեր երկրի ժողովրդական տնտեսության ծաղկման ու բարգավաճման գործում։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը միշտ էլ խոշոր ուշադրություն են դարձրել երկաթուղային տրանսպորտի զարգացմանը և նրա աշխատանքի բարելավմանը։ Մեր երկիրն անընդհատ զարգացնում ու կատարելագործում է երկաթուղային տրանսպորտը, իսկ սոցիալիստական ինդուստրիան այն հագեցնում է աշխարհում ամենակատարյալ տեխնիկայով, որովհետև երկաթուղին կենսականորեն անհրաժեշտ է ամբողջ սովետական էկոնոմի-



կայի համար։ Բավական է ասել, որ մեր երկրի բեռնաշրջանառության մոտ 85 տոկոսը և մարդատար փոխադրումների ավելի քան 90 տոկոսը կատարվում է երկաթուղային տրանսպորտով։

Պարտիայի և կառավարության մշտական հոգատարության ու օգնության շնորհիվ սովետական երկաթուղայինները պատվով են կատարել ու կատարում իրենց առջև դրված խնդիրները։

Առաջին հնգամյակների տարիներին պարտիայի ղեկավարությամբ անցկացվեց երկաթուղային ճանապարհների տեխնիկական արմատական վերակառուցում։ Ծավալվեց երկաթուղային նոր շինարարություն։ Շարք մտավ Սիբիրը Միջին Ասիայի հետ միացնող երկաթուղային մագիստրալը։ Մագնիտոգորսկ—Կարտալի—Տրոիցկ, Նովո-Սիբիրսկ—Պրոեկտնայա նոր գծերը, Կարագանդայի ճանապարհը, Պեչորայի ճանապարհը, Մոսկվա—Դոնբաս մագիստրալը և երկաթուղային շատ ուրիշ ճանապարհներ, որոնք հիմք հանդիսացան սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման համար։ Այդ նույն հնգամյակների ընթացքում երկաթուղային տրանսպորտի համար պատրաստվեցին մասնագետների և հմուտ

ղեկավարների բազմաթիվ կադրեր: ՍՍՌՄ-ը դարձավ երկաթուղային հզոր տերություն: 1940 թվականին արդեն մեր երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը 6,3 անգամ գերազանցեց 1913 թվականի մակարդակը: Իսկ այժմ այդ մակարդակը գերազանցված է 12-ից ավելի անգամ: Բավական է ասել, որ միայն Օմսկի ճանապարհը բեռնաշրջանառության գծով կատարում է նույնքան աշխատանք, որքան Անգլիայի, Բելգիայի և Հոլանդիայի երկաթուղային բոլոր ճանապարհները՝ միասին վերցրած, իսկ Տոմսկու ճանապարհը՝ այնքան, որքան Ճապոնիայի և Թյուրքիայի բոլոր երկաթուղային ճանապարհները միասին վերցրած: Մեր երկաթուղիների յուրաքանչյուր կիլոմետրը բեռնավորված է 2,5 անգամ ավելի, քան ԱՄՆ-ում և 4 անգամ ավելի, քան Անգլիայում: Մարդատար երթևեկության չափերով երկաթուղային տրանսպորտը վաղուց գրավում է առաջին տեղը աշխարհում:

Մեր երկաթուղային տրանսպորտը խոշոր դեր կատարեց երկրի ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանների կատարման գործում: Նա հաջողությամբ լուծեց Հայրենական Մեծ պատերազմի տարի-



ներին իր առջև դրված խոշոր ու պատասխանատու խնդիրները:

ՍՍՌՄ զարգացման հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներում նշվեցին սոցիալիստական երկաթուղային տրանսպորտի հետագա զարգացման խնդիրները: Նախատեսվեց 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, երկաթուղիների բեռնաշրջանառությունը ավելացնել 35—40 տոկոսով, վագոնների շրջապտույտը արագացնել 18 տոկոսով և այլ խնդիրներ: Միաժամանակ այդ նույն ժամանակաշրջանում երկու ու կես անգամ ավելի շատ նոր ուղիներ կկառուցվեն ու շահագործման կհանձնվեն՝ նախորդ հնգամյակի համեմատությամբ:

Պարտիայի և կառավարության անդուլ հոգատարության և օգնության շնորհիվ սովետական երկաթուղայինները նոր հնգամյակի առաջին երեք տարում արդեն բեռնաշրջանառության աճը 1950 թվականի համեմատությամբ հասցրին 32,5 տոկոսի, իսկ վագոնների շրջապտույտը արագացրին 11,3 տոկոսով: Այս արդեն ցույց է տալիս, որ սովետական երկաթուղայինները լիովին կապահովեն 19-րդ համագումարի դիրեկտիվների կատարումը:

Սովետական իշխանության տարիներին զգալի նվաճումներ է ձեռք բերել նաև մեր ռեսպուբլիկայի երկաթուղային բաժանմունքը։ Ռեսպուբլիկայում երկաթուղային կայանների մոտ 90 տոկոսը ապահովված է էլեկտրական էներգիայով։ Ընդարձակվել և բարեկարգվել է շոգեքարշային և վագոնային պարկը, տեխնիկապես հագեցվում է կապն ու գծային տնտեսությունը։ Բաժանմունքում ստեղծվել են տասնյակ երկաթուղային նոր ձեռնարկություններ, դպրոցների, մանկապարտեզների, գրադարանների, ակումբների, բուժհիմնարկների, առևտրի օբյեկտների լայն ցանց։ Տարեցտարի ընդարձակվում է բնակարանային շինարարությունը։ Երևանի, Լենինականի, Կիրովականի և ուրիշ երկաթուղային ավաններում երկաթուղայինների համար կառուցվում են նոր բնակելի շենքեր։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման հետ տարեցտարի խոշոր չափով աճում է երկաթուղու Երևանի բաժանմունքի աշխատանքի ծավալը։ Միայն նախապատերազմյան տարիների ընթացքում մի քանի անգամ ավելացել է Երևան, Լենինական, Կիրովական, Անի, Արթիկ, Հոկտեմբերյան, Թումանյան, Ալավերդի և մի շարք կայարանների բեռնային աշ-



խատանքը։ Երկաթուղային ցանցի առաջավոր ձեռնարկությունների և անվանի մարդկանց փորձով, վերջին մի քանի տարիների ընթացքում արմատական բարելավում կատարվեց Երևանի բաժանմունքի աշխատանքում։ Շոգեքարշայինները, վագոնայինները, գծայինները, երթևեկության ծառայության և մյուս պրոֆեսիաների մարդիկ ծավալելով սոցիալիստական մրցությունը միմյանց հետ, շարունակ բարձրացնում են իրենց աշխատանքի արտադրողականությունը։ Սոցիալիստական մրցության մեջ միշտ առաջավոր են Լենինականի վագոնային դեպոն, գծի Երևանի ուղեմասը, Երևան կայարանը, բեռնման, բեռնաթափման գրասենյակը և տասնյակ այլ կոլեկտիվներ։

Այս կոլեկտիվները երկաթուղայինի համամիութենական օրը դիմավորում են փայլուն հաջողություններով։

Օրինակ, Երևան կայարանը կիսամյակի բեռնման պլանը կատարեց 109 տոկոսով, բեռնաթափման պլանը՝ 103,1 տոկոսով, իսկ գլխավոր ցուցանիշը՝ վագոնի պարապուրդը նորմայից իջեցրեց 2,8 տոկոսով։ Կապի Երևանի ուղեմասը ընթացիկ նորոգման հունիս ամսվա պլանը կատարեց 120 տոկոսով, Լենինականի վագոնային դեպոն հունիս

ամսում վագոնների կապիտալ նորոգման պլանը կատարեց 121 տոկոսով, միջին նորոգման պլանը՝ 102 տոկոսով։

Մրցության շնորհիվ ամբողջ բաժանմունքը վագոնների բեռնման կիսամյա պլանը կատարել է 102,4 տոկոսով, բեռնաթափմանը՝ 100,3 տոկոսով։

Երևանի բաժանմունքի երկաթուղայինները հաջողությամբ կատարեցին նաև 7 ամսվա առաջադրանքները։ Երկաթուղայինները այս հաջողություններով չեն հանգստանում։ Օգտագործելով ներքին ռեզերվները, կատարելով ստանձնած պարտավորությունները, նրանք բեռները կփոխադրեն առանց կորուստների և սահմանված ժամկետներում։

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԳՅՈՒՂԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՄԱՍԻՆ

Լ. ՆԻԿՈՂՈՍՅԱՆ

Սևանի շրջանի Ծովագյուղի միջնակարգ դպրոցի ուսուցիչ Խ. Գուլանյանը կոլտնտեսության դաշտավարական 6-րդ բրիգադայի ագիտատորն է։ Նա սիստեմատիկաբար լինում է կոլտնտեսականների մոտ և նրանց պարզաբանում է պարտիայի ու կառավարության կողմից կոլտնտեսային աշխատավորության առջև դրված խնդիրները։

Իր յուրաքանչյուր զրույցի ժամանակ ագիտատորը կենդանի օրինակներ է բերում նաև շրջանի և իրենց գյուղի կյանքից, դրանով զրույցը դարձնում հետաքրքրական, մատչելի և ներգործուն։ Վերջերս նա իր հերթական զրույցներից մեկը նվիրեց հայրենի գյուղի կուլտուրային։

— Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը,— ասաց նա,—

անդուլ հոգատարություն են ցուցաբերում սովետական ժողովրդի կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացման նկատմամբ։

Կենսագործելով մեծ Լենինի պատգամները, Կոմունիստական պարտիան մեր երկրում իսկական կուլտուրական ռևոլյուցիա կատարեց։ Դա հնարավոր դարձավ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ձեռք բերված հաջողությունների, ազգային եկամտի անընդհատ աճման շնորհիվ։ Մեզ մոտ 1940 թվականից հետո անցած 10—11 տարվա ընթացքում ազգային եկամուտը աճել է 83 տոկոսով։

Եթե կապիտալիստական երկրներում ազգային եկամտի կեսից ավելին յուրացնում են շահագործող դասակարգերը, ապա մեր երկրում աշխատավորների անձնական նյութական և կուլտուրական կարիքների բավարարման համար հատկացվում է ազգային եկամտի մոտ 75 տոկոսը, իսկ մնացածը ծախսվում է սոցիալիստական արդյունաբերության ընդլայնման և հասարակական այլ կարիքների վրա։ Այդ բոլորից օգտվում են ինչպես քաղաքի, այնպես էլ գյուղի աշխատավորները։

Ահա, օրինակ, մեր գյուղը։ Սովետական իշխանության տարիներին անճանաչելիորեն



փոխվել է գյուղի դեմքը։ Գյուղի կուլտուրան ավելի բուռն վերելք ապրեց հատկապես կոլտնտեսային կարգերի հաղթանակից հետո, երբ մանր, փոշիացած գյուղացիական տնտեսություններին փոխարինեցին բազմաճյուղ ու զարգացած կոլտնտեսությունները, նահապետական արորին փոխարինեց հզոր տրակտորը, կոլտնտեսության արտադրության մեջ ներդրվեցին կոմբայնը և բարձր զարգացման հասած բազմաթիվ գյուղատնտեսական մեքենաները։

Ձեր աչքերի առջև,— շարունակում է ագիտատորը,— հիմնովին փոխվել է նաև մեր գյուղի դեմքը։

Հայ անվանի գրող Մուրացանը իր «Առաքյալը» վեպում տվել է հին Ջիբուխլուի պատկերը, որը հատուկ էր գրեթե բոլոր հայ գյուղերին։ Գետնափոր խրճիթներ, ծուռ ու մուռ փողոցներ, ուր բնակարանների տեղ աչքի էին ընկնում միայն աթարի դեզերը, մերկ ու բոկոտն մանուկներ, վաշխառուի մտրակի տակ հեծող չարքաշ աշխատավորներ,—ահա թե ինչպիսին է եղել հին Ջիբուխլուն, Մուրացանի լեզվով ասած՝ «այդ «գյուղ» կոչված ավերանոցը»։

Ինչ խոսք կարող է լինել նման գյուղի կուլտուրայի, կուլտուրական օջախների,

դրանցից թեկուզ ամենաանհրաժեշտի՝ դըպրոցի մասին։

— Բա, գեղականը ո՞րքան կարա ուսումնարան հիմնել,— ասում է, «Առաքյալը» վեպի հերոսներից մեկը՝ տիրացու Մոսին։

Այժմ մեր գյուղացիները իրավամբ պարծենում են իրենց դպրոցով։ Սովետական իշխանության առաջին տարիներին բացված տարրական դպրոցը շուտով փոխվեց յոթնամյակի, իսկ 6 տարի առաջ՝ միջնակարգի։ Այնտեղ այս ուսումնական տարում սովորում էին 450 աշակերտ։ Տարիների ընթացքում մեր դպրոցն ավարտել, ապա բարձրագույն կրթություն են ստացել մի քանի տասնյակ ծովագյուղացիներ, որոնք աշխատում են ինչպես մեր գյուղում, շրջանում, այնպես էլ Երևանում, Բաքվում, Թբիլիսիում և Միության այլ քաղաքներում ու շրջաններում։

Դպրոցի 18 ուսուցիչներից 13-ը տեղացիներ են, որոնց մեծ մասն ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն։ Հայտնի է, որ մեր դպրոցն իր բարիքներն է տվել յուրաքանչյուր ծովագյուղացու։

Վերցնենք, օրինակ, կոլտնտեսական Արսեն Մինասյանի ընտանիքը, որի բոլոր չափահաս անդամները գրագետ են, իսկ նրան-



ցից 6-ը կրթություն են ստացել դպրոցում։ Արսենի որդիներից Գագիկն ու Բաղդասարը, հարսներից Նազիկն ու Շուշանիկը ուսուցիչներ են, միջնակարգ կրթությամբ մի աղջիկը ակումբի վարիչ է, տղաներից մեկը սովորում է Երևանի Զոովետ ինստիտուտում։

Նրա հետ միասին ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատություններում այս տարի սովորում են 15 ծովագյուղացիներ, որոնք վերջին մի քանի տարում ավարտել են մեր դպրոցը։

Ագիտատորը, նշում է, որ իրենց գյուղի կուլտուրական կյանքում զգալի տեղ ունի ակումբը։ Այն դարձել է գյուղի կուլտուրական օջախներից մեկը և իր գործունեությամբ նպաստում է գյուղատնտեսության շեշտակի վերելքի ապահովմանը, պրոպագանդում է սովետական գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, օգնում է կոլտնտեսային արտադրության հետագա զարգացմանը։

Գյուղն ունի 3 հարուստ գրադարան, որ կան 4.000 կտոր գրքեր, որոնցից օգտվում են ավելի քան 560 ընթերցողներ։ Այդ երեք գրադարաններում Մարքսի, Էնգելսի, Լենինի, Ստալինի աշխատությունների հետ միասին գտնվում են հայ և ռուս գրողների, համաշխարհային գրականության կլասիկների եր-

կերը։ Վերջին 5—6 ամսվա ընթացքում կոլտնտեսականներ Ա. Գուլանյանը, Հ. Նիկողոսյանը, Հ. Սարգսյանը և ուրիշներ կարդացել են 10—12 անուն գիրք և բրոշյուր։ Աշխատավորները Աբովյանի, Նալբանդյանի, Րաֆֆու, Շիրվանզադեի, Մուրացանի, Զարյանի և մյուս հայ գրողների երկերից բացի, գյուղի գրադարաններից վերցնում ու մայրենի լեզվով ընթերցում են ինչպես Պուշկինի, Լև Տոլստոյի, Գորկու, Մայակովսկու, Ֆադեևի, այնպես էլ Շեքսպիրի, Բալզակի, Հայնեի և ուրիշ գրողների ստեղծագործությունները։ Բացի դրանից, գյուղի աշխատավորներից ավելի քան 30 հոգի ունեն իրենց անձնական հարուստ գրադարանները։

Այնուհետև ագիտատորը պատմում է, թե ինչպես գյուղի աշխատավորների կենցաղում հաստատուն կերպով մտել է կինոն։ Ակումբի դահլիճում Ծովագյուղի աշխատավորները ամսական առնվազն երեք անգամ դիտում են կինոֆիլմեր։ Վերջին 5 ամսում իրենց մոտ ցուցադրվել են 15 գեղարվեստական, 4 գիտա-պոպուլյար կինոֆիլմեր, այդ թվում «Լենինը 1918 թվին», «Լենինը հոկտեմբերին», «Զվեզդա», «Ոսկեկալը լեռներում», «Անմեղ մեղավորներ», «Յուրաքանչյուրին ըստ իր աշխատանքի» և այլն։



Կինոյից բացի, ծովագյուղացիները հաճախ դիտում են իրենց գյուղական ակումբին կից թատերական ինքնագործ խմբի ներկայացումները, երգի-պարի խմբի ելույթները։

Յուրաքանչյուր գյուղի կուլտուրական մակարդակի մասին,— շարունակում է ագիտատորը,— կարելի է դատել նաև նրանով, թե այնտեղ որքան թերթեր ու ամսագրեր են ստացվում։

Կարելի է ասել, որ պարբերական մամուլը դարձել է մեր գյուղի աշխատավորների սեփականությունը։ Ծովագյուղում ստացվում են մոտ 280 օրինակ 20 անուն թերթեր ու ամսագրեր։ Շատ կոլտնտեսականներ, ուսուցիչներ, բժիշկներ և գյուղատնտեսական մասնագետներ 5—8 անուն թերթի ու ամսագրի բաժանորդ են։

Հարազատ պարտիայի ու կառավարության հոգատարության շնորհիվ ծովագյուղացիները օգտվում են այնպիսի բարիքներից, ինչպիսիք են էլեկտրականությունը, ռադիոն և հեռախոսը։ Ծովագյուղն ունի կապի բաժանմունք և ռադիոհանգույց։ Կոլտնտեսականների բնակարաններում այժմ կան 120 ռադիոբարձրախոսներ, 28 ռադիո-ընդունիչներ, որոնց միջոցով նրանք ամեն օր լսում են թե

ռեսպուբլիկայի մայրաքաղաքի և թե հարազատ Մոսկվայի ձայնը։

Աշխատավորների կենցաղում մտել է նաև էլեկտրականությունը։ Այն օգտագործվում է ոչ միայն բնակարանների լուսավորման և կենցաղային կարիքների բավարարման համար, այլև՝ կոլտնտեսության բերքի կալսման, ոչխարի խուզի, փայտի սղոցման և գյուղատնտեսական մյուս աշխատատար պրոցեսներում։

Գյուղատնտեսական աշխատանքների էլեկտրիֆիկացումը թեթևացրել է մեր կոլտնտեսականների ֆիզիկական աշխատանքը, բարձրացրել նրա արտադրողականությունը և տարեցտարի լիարժեք է դարձնում կոլտնտեսային աշխօրը։ Անցյալ տարի կոլտնտեսականներն իրենց վաստակած ամեն մի աշխօրի դիմաց ստացան 3,5 կիլոգրամ հացահատիկ, 2 կիլոգրամ կարտոֆիլ, 75 գրամ պանիր, յուղ, անասնակեր և այլ գյուղատնտեսական մթերքներ։ Բացի դրանից, նրանք զգալի եկամուտներ են ստանում նաև իրենց անձնական օգտագործման տակ գտնվող տնամերձ հողամասից և անասուններից։ ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումից հետո, այժմ գյուղում գրեթե չկան այնպիսի կոլտնտեսականներ, որոնք չունե-



նան կովեր, ոչխարներ և մթերատու այլ անասուններ։

— Նայեցեք մեր գյուղին,— դիմելով իրեն լսողներին շարունակում է ագիտատորը,— և դուք կտեսնեք, որ իսկապես Մուրացանի նկարագրած Զիրուխլուի հետքն անգամ չի մնացել։

Կոլտնտեսային ունևոր և երջանիկ կյանքը գյուղացիներին հնարավորություն է տվել կառուցել նոր բնակարաններ, դուրս գալ գետնափոր խրճիթներից, վարել իսկական մարդավայել կյանք։ Հաշված է, որ վերջին 8 տարիների ընթացքում մեր գյուղի 130 կոլտնտեսային ընտանիքներ կառուցել են նոր բնակարաններ, որտեղ վառվում են Իլյիչի լամպերը։ Այդ բնակարաններից 48-ը ունեն թիթեղածածկ կամ կղմինդրածածկ ձեղնահարկեր։ Այս տարի նոր բնակարաններ են կառուցում 30 կոլտնտեսականներ, իսկ ունեցած բնակարաններին ձեղնահարկեր են դնում 20 տնտեսություններ։ Վերջին մեկ տարվա ընթացքում գյուղում կառուցվել են ուսուցչի տներ, արդեն սկսվել է գյուղական հյուրանոցի երկհարկանի շենքի շինարարությունը, որն ավարտվելու է գալիք տարի։ Հյուրանոցը կունենա ճաշարան, վարսավի-

րանոց և կենցաղային սպասարկման այլ հարմարություններ։

Մեր գյուղն ունի լավ աղբյուր, հարուստ ասորտիմենտով խանութներ, տարեցտարի բարեկարգվում ու ծառազարդվում են փողոցները, հրապարակները, բոլոր պայմաններն ստեղծվում են աշխատավորների կուլտուրական ու բարեկեցիկ կյանքի հետագա բարելավման համար։

Այս տարի շահագործման է հանձնվել հիվանդանոցը, որն ունի կլինիկական և մանկաբարձական բաժիններ 15 մահճակալով։ Հիվանդանոցում և բուժկայանում աշխատում է 3 բժիշկ։

Զրույցի վերջում ագիտատորը նշում է, որ Ծովագյուղը հպարտանում է իր ինտելիգենցիայով։ Գյուղում այժմ աշխատում են 36 ուսուցիչներ, բժիշկներ, ագրոնոմներ, զոոտեխնիկներ, ակումբա-գրադարանային աշխատողներ, որոնք իրենց ստեղծագործական ուժերն ու եռանդը նվիրաբերում են կոլտնտեսային աշխատավորության բարեկեցության և կուլտուրական մակարդակի հետագա վերելքին, Սովետական Հայրենիքի բարօրության գործին։

---

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

# ԱՆՇԵՂ ՎԵՐԵԼՔԻ ՈՒՂԻՈՎ

Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Արտաշատի շրջանի Անաստասավանի կոլտնտեսության նախագահ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս

25 տարի առաջ Արտաշատի շրջանի Անաստասավան գյուղում կազմակերպվեց «Փարիզյան կոմունա» կոլտնտեսությունը, որն ուներ ընդամենը 129 հեկտարի վարելահող, 172 հեկտար խաղողի այգի և միայն կես հեկտար թթենու այգի։ Տնտեսության արտադրության միջոցներն էին՝ 3 հատ գութան, 7 կուլտիվատոր, 6 ձի, 25 եզ և մի քանի հողաշեն փոքրիկ գոմեր ու շենքեր։ Կոլտնտեսության դրամական եկամուտը կազմում էր ընդամենը 673 հազար 46 ռուբլի։

25 տարվա ընթացքում կոլտնտեսությունը դարձել է անճանաչելի։ Նախկին թույլ և փոքր տնտեսության փոխարեն, այժմ ունենք խոշոր, տնտեսապես և կազմակերպչորեն

ուժեղ սոցիալիստական տնտեսություն, որը հագեցված է առաջադիմության ժամանակակից նոր տեխնիկայով: Մեծ փոփոխություններ են տեղի ունեցել կոլտնտեսության տնտեսական և կուլտուրական կյանքում, իրացված է խոտադաշտային ցանքաշրջանառությունը, առաջվա 2—3 կուլտուրաների փոխարեն, այժմ ցանվում են բազմապիսի կուլտուրաներ, այդ թվում՝ բամբակ, հացահատիկ, խոտաբույսեր, բանջարա-բոստանային կուլտուրաներ և այլն: Մի քանի անգամ ավելացել են ցանքային տարածությունները և դրա հետ մեկտեղ՝ նրանց բերքատվությունը: Այդ բանը ցույց տալու համար, բերենք մի այսպիսի օրինակ. Եթե բամբակի ցանքատարածությունը 1932 թվականին 100 հեկտարից չէր անցնում, իսկ մեկ հեկտարի բերքատվությունը կոլտնտեսության կազմակերպման առաջին տարիներին կազմում էր ընդամենը 17 ցենտներ, ապա 1953 թվականին բամբակի տարածությունը կազմում էր 223,7 հեկտար, իսկ մեկ հեկտարի միջին բերքատվությունը՝ 31,8 ցենտներ: Առաջ կոլտնտեսությունն ուներ 172 հեկտար խաղողի այգի, մեկ հեկտարի բերքատվությունը կազմում էր 47 ցենտներ, իսկ այժմ կոլտնտեսությունն ունի 304 հեկտար խաղողի այգի և



մեկ հեկտարի միջին բերքատվությունը կազմում է ավելի քան 83 ցենտներ: Նույնը կարելի է ասել նաև մշակվող մնացած կուլտուրաների մասին:

Բարձր բերք ստանալու համար կոլտնտեսության 6 անդամներ արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչմանը, տասնյակ կոլտնտեսականներ պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով:

Կոլտնտեսության բոլոր հիմնական աշխատանքները կատարվում են մեքենաների օգնությամբ, որը հնարավորություն է տվել նոր տեխնիկայի բազայի վրա ստեղծել խոշոր բազմաճյուղ տնտեսություն: Այդ է պատճառը, որ տարեց-տարի ավելանում են կոլտնտեսության եկամուտները: Այսպես, օրինակ, եթե 1932 թվականին կոլտնտեսության դրամական եկամուտը կազմում էր 673 հազար 462 ռուբլի, ապա այժմ այն կազմում է 7 միլիոն 20 հազար 84 ռուբլի: Մշակվող մեկ հեկտարից ստացվող եկամուտը դրամական արտահայտությամբ կազմում է 8.848 ռուբլի:

Բազմաճյուղ զարգացող տնտեսությունը պահանջում է յուրաքանչյուր կոլտնտեսականից ամբողջ տարին ակտիվ կերպով մաս-

ճակցելու գյուղատնտեսական աշխատանքներին։ Անաստասավանում մեկ կոլտնտեսականի միջին աշխօրերի քանակը կազմում է 280—300 աշխօր։ Կոլտնտեսությունում լավ հիմքերի վրա է դրված աշխատավորների նյութական և կուլտուրական պահանջների բավարարումը։ Նախադպրոցական հասակ ունեցող բոլոր երեխաները ընդգրկված են մանկապարտեզներում և մանկամսուրներում, նրանց համար կառուցված են գեղեցիկ և հարմար շենքեր, որոնք շրջապատված են հոգատարությամբ և գուրգուրանքով։

Որո՞նք են այն միջոցները, որ վճռական դեր են խաղում կոլտնտեսության զարգացման գործում և հնարավորություն են տվել կոլտնտեսային արտադրության մեջ արմատավորելու առաջավոր փորձը և գիտության նվաճումները։

Կոլտնտեսային աշխատանքի հիմնական ուժը, դա մարդն է. կոլտնտեսությունում հաջող աշխատանքի համար առաջին հերթին անհրաժեշտ է այնպես անել, որպեսզի կոլտնտեսականներն իրենց ամբողջ ուժերը նվիրաբերեն հանրային տնտեսության զարգացմանը։ Ուստի անհրաժեշտ է ամենօրյա հոգատարություն ցուցաբերել յուրաքանչյուր կոլտնտեսականի նկատմամբ, բարձրացնե-



լով նրա նյութական շահագրգռվածությունը։

Մեր կոլտնտեսությունն ամեն տարի աշխօրերի դիմաց տալիս է մեծ քանակությամբ մթերքներ և դրամ։ Նախապատերազմյան տարիների համեմատությամբ այժմ մեկ աշխօրին հասանելիք բնամթերքի քանակն ավելացել է 3 անգամ, գրեթե նույնքան անգամ ավելացել է նաև դրամական հասանելիքը։ 1945 թվականին կոլտնտեսությունն ստացավ 2 միլիոն 925 հազար 115 ռուբլի, իսկ անցյալ տարի՝ 7 միլիոն 20 հազար 84 ռուբլի։ Այդ նույն ժամանակաշրջանում մեծ չափերով աճել է անբաժանելի ֆոնդը։ 1945 թվականին անբաժանելի ֆոնդը կազմում էր 415 հազար 140 ռուբլի, իսկ այժմ այն հասնում է 1 միլիոն 193 հազար 414 ռուբլու։

Կոլտնտեսության հարստության հիմնական աղբյուրներից մեկը աշխատանքի ճիշտ կազմակերպումն է։ Ճիշտ կազմակերպելով աշխատանքը կոլտնտեսությունում, մենք հասել ենք այն բանին, որ խիստ կերպով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, կրճատվել աշխատանքի սեզոնայնությունը։ Մեզ մոտ յուրաքանչյուր կոլտնտեսական աշխատում է համարյա ամբողջ տարին։

Կոլտնտեսականի անձնական շահը սերտ

կերպով զուգակցված է հանրային շահի հետ, նրանց համար հանրային շահը գլխավորն է, հանրային տնտեսությունը՝ հիմնականը։ Կոլտնտեսությունը ստեղծել է բոլոր անհրաժեշտ պայմանները, որպեսզի ոչ մի մարդ դուրս չմնա կոլտնտեսային աշխատանքից։

Կոլտնտեսային աշխատավորության ազնիվ և անձնուրաց աշխատանքի շնորհիվ անընդհատ ավելանում են արտադրական օբյեկտները։ Տարեցտարի աճում է տնտեսության դրամական եկամուտը։

Վերջին 5—6 տարիների ընթացքում կոլտնտեսությունը կառուցել է 1 գոմ՝ 1.000 գլուխ մանր եղջերավոր անասունների համար, 2 կովանոց, որտեղ անասնաբուծական հիմնական աշխատատար պրոցեսները մեքենայացված են, 1 հորթանոց, 120 տոննա տարողությամբ սիլոսի աշտարակ, 2 թռչնանոց, 7 դարբնոց, հյուսնոց, էլեկտրաաղաց, փականագործական արհեստանոց։ Շուտով կավարտվի բամբակի նոր տիպի չորանոցի կառուցումը։

Կոլտնտեսությունում կառուցված է նաև 3 մթերքի պահեստ, 1 ավտոգարաժ և այլ արտադրական օբյեկտներ։

Կոլտնտեսությունն այդ հաջողություններին հասել է նաև շնորհիվ այն բանի, որ ար-



տադրության մեջ սիստեմատիկաբար արմատավորվում են գիտության նվաճումները և առաջավոր փորձը։ Կոլտնտեսությունում լայնորեն արմատավորված է բամբակենու նոսրացման և ակոսային ջրման առաջավոր փորձը։ Բարձր բերքի համար կոլտնտեսությունում գնալով ծավալվում է սոցմրցությունը։ Մեր կոլտնտեսությունը սոցիալիստական մրցության մեջ է մտել եղբայրական Ուկրաինական ՍՍՌ Խերսոնի մարզի Վիսոկոպոլսկի շրջանի Նովո-Պետրովսկի գյուղի կոլտնտեսության հետ։ Վերջերս նրանց հրավերով ես և կոլտնտեսության մի շարք առաջավորներ մեկնեցինք նրանց մոտ։ Մենք նրանցից շատ բան սովորեցինք։

ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի ընդունած պատմական որոշումներից հետո կոլտնտեսականները բուռն խանդավառությամբ են աշխատում։ Նրանք պատվով կկատարեն ստանձնած պարտավորությունները և երկրին կտան ավելի շատ բամբակ, հացահատիկ, մրգեղեն և կաթնամթերք։

---

# ԿԱՐՏՈՖԻԼԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ

Սոցիալիստական Աշխատանքի Հերոսուհի Ա. Պ. ԵՐՄԱԿՈՎԱՅԻ պատմածը

*Մոժայսկի շրջանի մեր «Բորոդինո» գյուղատնտեսական արտելի կոլտնտեսականները համառ աշխատանքով կարտոֆիլի բարձր բերք են ստանում: Ահա մի քանի տարի է, որ իմ ղեկավարած օղակը հեկտարից ստանում է 300-ից մինչև 500 ցենտներ կարտոֆիլ: Անցյալ տարի, չնայած կլիմայական աննպաստ պայմաններին, մենք ստացանք 420-ական ցենտներ կարտոֆիլ:*

*Օղակի հաջողությունները բացատրվում են նրանով, որ պրակտիկայում կիրառում ենք գյուղատնտեսական գիտության հանձնարարած ագրոտեխնիկական ձեռնարկումները, օգտագործում ենք մյուս կոլտնտեսությունների առաջավոր կարտոֆիլաբույծների փորձը, խնամքով ենք կատարում կարտոֆիլի ցանքերի մշակությունը:*



*Համառոտակի պատմեմ, թե անցյալ տարի մենք ինչպես էինք պայքարում բարձր բերքի համար: Նախ և առաջ ագրոնոմի օգնությամբ մենք մշակեցինք ագրոտեխնիկական ձեռնարկումների կոմպլեքսի կիրառման պլանը: Մեր կոլտնտեսության հողերը ենթակավային հողեր են, ուստի առանձնապես անհրաժեշտ է ունենալ ճիշտ ցանքաշրջանառություններ, յուրաքանչյուր կուլտուրայի համար լավ նախորդներ, բարձր որակով կատարել հողի մշակությունը, ճիշտ ժամկետով կատարել պարարտացումը, լավ խնամել ցանքերը: Կարտոֆիլի տնկումը մենք կատարեցինք այն հողամասերում, որտեղ նախորդող կուլտուրաները նպաստավոր էին կարտոֆիլի համար: Այսպես, օրինակ՝ 5 հեկտար տնկեցինք առվույտատեղում և 5 հեկտար՝ հացահատիկային կուլտուրայի ճմաշերտից հետո: Կարտոֆիլի տակ դրված հողամասերը աշնանը վարեցինք նախախոփիկ ունեցող տրակտորային գութանով՝ 24—25 սանտիմետր խորությամբ: Խոնավությունը պահպանելու համար՝ վաղ գարնանը տափանեցինք հողամասերը: Նախքան կարտոֆիլի տնկումը հողամասերում կատարեցինք կրկնավար, յուրաքանչյուր հեկտարը պարարտացրինք 30 տոննա գոմաղբա-ֆոսֆո-*

րիտի կոմպոստով, երկու ցենտներ սուպերֆոսֆատով և երկու ցենտներ քլորակալիումով։

Բարձր բերք ստանալու համար անհրաժեշտ է լուրջ ուշադրություն դարձնել սերմացուին։ Ցանքի նախօրյակին կոլտնտեսուհիները ջոկեցին հավասար մեծություն ունեցող 80—100 գրամանոց առողջ պալարներ։ Ջոկելուց հետո սերմացու կարտոֆիլը տեղափոխեցինք լուսավոր շենքեր՝ յարովիզացիայի ենթարկելու համար։

Կարտոֆիլը տնկեցինք ՍԿԳ—4 մեքենայով երկու օրում՝ քառակուսի-բնային եղանակով։ Այժմ արդեն բոլորը գիտեն, թե բերքատվության ավելացման գործում ինչ հսկայական նշանակություն ունի այդ եղանակը և թե ինչ է տալիս մեքենայական տնկումը, ուստի հարկ չկա այդ մասին մանրամասնորեն խոսելու։ Կասեմ միայն այն, որ կարտոֆիլը մեքենայով տնկելիս մենք յուրաքանչյուր հեկտարի վրա ծախսեցինք մեկ մարդ-օր, մինչդեռ տրակտորային կուլտիվատորով տնկելիս ծախսում էինք 11,2 մարդ-օր։ Մի ուրիշ օրինակ էլ. 1951 թվականին քառակուսի-բնային եղանակով կատարված կարտոֆիլի ցանքի յուրաքանչյուր հեկտարից 81 ցենտներ ավելի բերք ստացվեց, քան շարքերով տնկված ցանքերից։ Ահա՛, թե որն է



քառակուսի-բնային եղանակի մեծ առավելությունը։

Մենք մեծ ուշադրություն նվիրեցինք ցանքերի խնամքին։ Տնկելուց հետո կատարեցինք տափանում, իսկ ծլերը երևալուց հետո՝ միջշարքային փխրեցում երկու ուղղությամբ։ Երբ բույսերը հասան 15—20 սանտիմետրի, սնուցեցինք ցանքերը, հեկտարին տալով 1,5 ցենտներ քլորակալիում և 0,6 ցենտներ ամոնիակային սելիտրա, որից հետո կատարեցինք բուկլիցը։ Հուլիսի 10-ին, բուկլիցից առաջ, նորից սնուցեցինք ցանքերը։

Ամառվա ընթացքում երեք անգամ երկու ուղղությամբ կատարեցինք միջշարքային մշակություն, որի շնորհիվ ոչնչացվեցին մոլախոտերը և հողը միշտ փուխր մնաց։ Իսկ չէ՞ որ դա մեր պայմաններում, նկատի ունենալով մեր հողերի ծանր ենթակավային լինելը, առանձնապես կարևոր է։

Ինչպես հայտնի է, 1953 թվականին օդերևութաբանական պայմանները անբարենպաստ էին՝ ամառը չորային էր, աշունն անձրևային։ Բայց շնորհիվ ցանքերի լավ խնամքի և բույսերի սնուցման՝ կարտոֆիլի միջին բերքը հեկտարից կազմեց 420 ցենտ-

ներ։ Իսկ առվույտի և տիմոֆեևկայի արտերում կատարված կարտոֆիլի ցանքերի յուրաքանչյուր հեկտարից մենք հավաքեցինք 500 ցենտներ բերք։ Յուրաքանչյուր բնում կար երեքից մինչև երեք ու կես կիլոգրամ պալար։

Մենք աշխատում ենք անցյալ տարիներին կուտակած փորձն ավելի լրիվ օգտագործել այս տարի։ Լորխ սորտի կարտոֆիլի սերմացուի համար մենք ընտրեցինք 70—100 գրամանոց լավ պալարներ։ 10 հեկտար ցանքը կատարեցինք երկու օրում՝ մայիսի 24-ին և 25-ին։ Թեև գարունն այս տարի ուշացավ, բայց լավ խնամքով մենք ծածկեցինք բաց թողած ժամանակը։

Այս գարնանը նույնպես ամբողջ կարտոֆիլի ցանքը կատարեցինք ՍԿԳ—4 մեքենայով՝ միայն քառակուսի-բնային եղանակով։ Պետք է նշել, որ կարտոֆիլ տնկող մեքենան այս տարի ավելի լավ աշխատեց, քան անցյալ տարի։ Դա բացատրվում է նրանով, որ մեքենավարը և կարտոֆիլ տնկող մեքենան սպասարկող կոլտնտեսուհիները ավելի փորձառու դարձան։ Ստուգիչ գծի և կարապիկների վրա աշխատող կոլտնտեսականներ ընկ. ընկ. Շուպարյովը, Բայկովը, Ռուեր, Շենդելևան և Խրիստոֆորովը խստիվ պահպա-



նում էին դաշտը չափերի բաժանելու և չափալարերը քաշելու կանոնները, թույլ չտալով և ոչ մի շեղում չափերի պահպանման գործում, ստուգում էին կարտոֆիլի բների շարքերը։ Կոլտնտեսականների ջանքերի և կարտոֆիլ տնկող մեքենայի փորձված մեքենավար ընկ. Սպիրիդոնովի ճշգրիտ աշխատանքի շնորհիվ ամենուրեք պահպանված է քառակուսին։

Գարնանավարի ժամանակ մենք դաշտերը պարարտացրինք՝ հեկտարին տալով 30 տոննա գոմաղբ, 2 ցենտներ քլորակալիում, իսկ տնկելիս՝ 2 ցենտներ գրանուլացված սուպերֆոսֆատ։ Տնկելուց մեկ շաբաթ անց՝ ամբողջ տարածությունը ցաքանեցինք, ոչնչացրինք գոյացած կեղևը։ Երկրորդ ցաքանումը կատարեցինք ծլերը գետնի երես դուրս գալուց հետո։ Առաջին կուլտիվացիայից 8—10 օր հետո կկատարենք միջշարային երկրորդ մշակությունը։ Բուկլիցից առաջ բույսերը կսնուցենք սուպերֆոսֆատով, քլորակալիումով, ամոնիակային սելիտրայով։ Երրորդ բուկլիցը կկատարենք փնջավորումից առաջ։

Մենք կանենք ամեն ինչ, որպեսզի այս տարի ավելի շատ բերք ստանանք, քան նախորդ տարիներին։

Ազնիվ ու բարեխիղճ աշխատանքի հա-

մար, բարձր բերք աճեցնելու համար անցյալ տարի իմ օղակի յուրաքանչյուր կոլտնտեսուհի որպես լրացուցիչ վարձատրություն ստացավ 3,5 տոննա կարտոֆիլ: Կաշխատենք, որ մեր կոլտնտեսուհիներն այս տարի էլ լավ վաստակեն:

Երբ կոլտնտեսուհիները իմացան, որ մեր օղակն առաջադրված է Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու, նրանք սկսեցին ավելի մեծ եռանդով աշխատել, որպեսզի այս տարի կարտոֆիլի ավելի լավ բերք աճեցնեն:

Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակին նվիրված ՌՍՖՍՌ Գերագույն Սովետի հոբելյանական սեսիայում ես հանդիպեցի Կիևի մարզի Պերեյասլավ-Խմելնիցկու շրջանի Շևչենկոյի անվան կոլտնտեսության օղակավարուհի Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ե. Ս. Խոբտայի հետ: Մենք որոշեցինք մրցել միմյանց հետ: Սոցիալիստական մրցությունը, փորձի փոխանակությունը կօգնեն մեզ՝ է՛լ ավելի մեծ հաջողություններ ձեռք բերելու կարտոֆիլի բերքատվության բարձրացման գործում:

Մեր կոլտնտեսությունում կան երեք օղակ ևս, որոնք կարտոֆիլագործությամբ են զբաղվում: Այդ օղակների սպասարկած հո-



ղամասերից նույնպես վատ բերք չստացվեց՝ հեկտարից 200—300 ցենտներ: Բայց բերքը շատ ավելի բարձր կլիներ, եթե կոլտնտեսուհիները անշեղորեն կատարեին ագրոտեխնիկական բոլոր պահանջները: Չէ՞ որ հողը նույնն է, սերմացուն նույնն է, տնկման եղանակը նույնն է, բայց բերքը ավելի ցածր է, քան մեր օղակումն է: Դա բացատրվում է նրանով, որ այդ օղակների կոլտնտեսուհիները պատշաճ ուշադրություն չեն դարձնում ցանքերի խնամքին՝ միջշարային փխրեցմանը, բուկլիցը ժամանակին կատարելուն, բույսերին սնուցում տալուն և այլն: Այս տարի ընկ. Լիպատովայի օղակի կոլտնտեսուհիները որոշել են լիովին օգտագործել մեր փորձը և ամբողջովին կիրառել ցանքերի մշակման մեր եղանակները: Կարելի է չտարակուսել, որ օղակը բարձր բերք կստանա: Եթե բոլոր օղակները հեկտարի բերքատվությունը հասցնեն 400—500 ցենտների, ապա կոլտնտեսությունը կարտոֆիլի հարյուրավոր տոննա լրացուցիչ բերք կստանա:

Վերջում ցանկանում եմ նշել, որ բարձր բերք կարելի է ստանալ ամեն տեսակ հողամասից: Հարկավոր է միայն ազնվորեն աշխատել, ճշտորեն կատարել ագրոտեխնիկական պահանջները, ուսումնասիրել և կիրառել առաջավորների փորձը:

---

# ՏԱՅԼԱՆԴ

## (ՏԵՂԵԿԱՆՔ)

Թայլանդը Հարավ-Արևելյան Ասիայի երկրներից մեկն է։ Նա գրավում է Հնդկաչին թերակղզու կենտրոնական մասը և Մալակկայի հյուսիսային մասը։ Թայլանդի տերիտորիան կազմում է 518,3 հազար քառ. կմ., իսկ բնակչության թիվը հավասար է 19,2 միլիոնի։ Երկրի մայրաքաղաքն է Բանգկոկը, որն ունի մոտ մեկ միլիոն 200 հազար բնակիչ։

Թայլանդը մինչև 1939 թիվը կոչվում էր Սիամ։ 1939 թվականին երկիրը ընդունեց «Մուանգ-Թայ» (երկիր Թայ) պաշտոնական անունը։ 1949 թվականից երկիրը կոչվում է Թայլանդ։

Թայլանդը ունի ընդհանուր սահման Բիրմայի, Պատետ-Լաոյի, Կխմերի և Մալակկյան թերակղզում՝ Մալակկայի հետ։ Երկիրը հարուստ է զանազան հանածոներով (կապար, վոլֆրամ, քարածուխ, ոսկի, արծաթ, ցինկ և ուրիշ)։ Թայլանդը գրավում է աշխարհում 3-րդ տեղը կաուչուկի արտադրության մեջ և 4-րդ տեղը՝ կապարի հանքանյութի հանույթի մեջ։

Թայլանդի բնակչության մեծ մասը ըստ ազգության կազմում են թայերը։ Երկրում բնակվում են նաև



չինացիներ, լաոներ, մալայցիներ, կխմերներ և ուրիշներ։ Թայլանդի բնակչության մեծ մասը խոսում է սիամական լեզվով և նրա զանազան բարբառներով։

16-րդ դարի սկզբից եվրոպացիները սկսեցին թափանցել Թայլանդ։ Պորտուգալական, հոլանդական և ֆրանսիական գաղութարարների դեմ Թայլանդի ժողովուրդը բազմաթիվ անգամ ապստամբել է երկրի ազատության և անկախության համար։ 1688—1689 թվերին Թայլանդի ժողովրդին հաջողվեց զինված պայքարի շնորհիվ դուրս վտարել երկրից ֆրանսիական գաղութարարներին։ Այդ հաղթանակի հետևանքով Թայլանդը կարողացավ պահպանել իր անկախությունը մինչև 19-րդ դարը։

19-րդ դարում անգլիական և ֆրանսիական գաղութարարները Թայլանդի վզին փաթաթեցին, այսպես կոչված «բարեկամության» և «առևտրի» մասին մի շարք պայմանագրեր, իսկ հետո երկիրը բաժանեցին իրենց ազդեցության ոլորտների։

Ճապոնական իմպերիալիստների ջախջախումը Թայլանդին չբերեց իսկական ազատություն և անկախություն։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Թայլանդն ընկավ անգլիական և ամերիկյան իմպերիալիստական ընկերությունների վերահսկողության տակ, որոնց միջև նույնպես բռնկվեց կատաղի պայքար։ Հաղթող դուրս եկան ԱՄՆ-ի գաղութարարները։ Ամերիկյան գործակալների ուղղակի օգնությամբ և ղեկավարությամբ 1947 թվականին Թայլանդում տեղի

ունեցավ պետական հեղաշրջում, որի հետևանքով իշխանությունը երկրում զավթեց ԱՄՆ-ի գործակալ ֆելդմարշալ Պիբունսոնգրամը, որը երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ ակտիվորեն ծառայում էր ճապոնական միլիտարիստներին։

Տաիլանդը ըստ պետական կառուցվածքի կոնստիտուցիոն միապետություն է։ Թագավորը միաժամանակ եկեղեցու առաջնորդն է։ Կոնստիտուցիայի համաձայն օրենսդրական իշխանությունը երկրում իրագործում է թագավորը «ազգային ժողովի խորհրդով և համաձայնությամբ»։ Բայց պետք է նշել, որ ազգային ժողովի անդամների կեսը կազմում են զինվորականները, որոնք հնազանդ գործիք են ռեակցիայի ձեռքում։

Տաիլանդը հետամնաց գյուղատնտեսական երկիր է։ Այդ բանին առաջին հերթին նպաստում է օտարերկրյա կապիտալի տիրապետությունը և ուժեղ ֆեոդալական մնացուկների գոյությունը։ Երկրի բնակչության 85 տոկոսը զբաղվում է գյուղատնտեսությամբ։ Համարյա բոլոր հողային տարածությունները գտնվում են խոշոր կալվածատերերի և բուդդայական հոգևորականության ձեռքում։ Մշակվող հողի 93 տոկոսը գրավում է բրինձը, որը երկրի գլխավոր պարենային կուլտուրան է։

Արդյունաբերությունը թույլ է զարգացած։ Երկրում կա ընդամենը 300 հազար բանվոր։ Օտարերկրյա իմպերիալիստական ընկերությունները խանգարում են Տաիլանդի արդյունաբերության զարգացմանը։ Նրանք



զարգացնում են միայն արտադրության այն ճյուղերը, որոնք անմիջականորեն կապված են ռազմա-ստրատեգիական հումքի արտահանման հետ։ ԱՄՆ-ի իմպերիալիստները արտահանում են երկրից չափազանց էժան գներով կաուչուկ, կապարի և վոլֆրամի հանքանյութ, ինչպես նաև անտառանյութ և բրինձ։

Գտնվելով տնտեսական ուժեղ կախման մեջ, Տաիլանդի ռեակցիոն կառավարողները ստորագրեցին անդրօվկիանոսյան իմպերիալիստների հետ մի շարք ստրկացուցիչ պայմանագրեր։ 1950 թվականի սեպտեմբերի 19-ին Տաիլանդի դավաճան կառավարողները ստորագրեցին ԱՄՆ-ի հետ «տնտեսական և տեխնիկական համագործակցության» մասին ստրկացուցիչ համաձայնագիրը, որի վրա հենվելով ամերիկյան իմպերիալիստները կարող են անսահմանափակ չափով երկրից արտահանել ստրատեգիական հումք։

Ամերիկյան իմպերիալիստները Տաիլանդը դարձնում են իրենց ռազմա-ստրատեգիական պլացդարմը Հարավ-Արևելյան Ասիայում։

Ուոլլ-ստրիտի ռազմական մոնոպոլիաների ճնշման տակ Տաիլանդը մասնակցեց կորեական ժողովրդի դեմ ամերիկյան իմպերիալիստական ագրեսիային։ Այժմ Տաիլանդի ռեակցիոն կառավարողները օգնում են անգլիական և ֆրանսիական իմպերիալիստներին Մալայայի, Վյետնամի, Պատետ-Լաոյի և Կխմերի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման ճնշման գործում։

1953 թվականին երկրի պետական բյուջեի ծախսերի կեսից ավելին հատկացվեցին ռազմական պատրաստություններին։ 1954 թվականին նախատեսված են ավելի մեծ գումարներ երկրի միլիտարիզացման համար։ Տաիլանդի ռեակցիոն կլիկը մշակել և կիրառում է պլաններ բանակի թիվը մինչև 200 հազարի հասցնելու համար։

Ամերիկյան իմպերիալիստների կողմից նախատեսված Հարավ-Արևելյան Ասիայում ստեղծվելիք ռազմական ագրեսիվ բլոկում հատուկ տեղ է հատկացվում Տաիլանդին, որը Ավստրալիայի, Նոր Զելանդիայի, Ֆիլիպինների, Հնդկաչինի մարիոնետային պետությունների հետ միասին ծառայելու է Հեռավոր Արևելքի և Հարավ-Արևելյան Ասիայի ժողովուրդների ազգային ազատագրական պայքարի ճնշման գործին։

Տաիլանդի աշխատավորները ակտիվ պայքար են մղում երկրի դավաճանների դեմ, խաղաղության և անվտանգության գործի ամրապնդման համար։ Բանվոր դասակարգի ղեկավարությամբ ժողովրդական մասսաները պահանջում են, որ Տաիլանդի կառավարությունը վարի ԱՄՆ-ի իմպերիալիստներից անկախ, ինքնուրույն քաղաքականություն։

Տաիլանդի աշխատավոր մասսաների պայքարի ավանգարդումն է գտնվում բանվոր դասակարգը, որին ղեկավարում է կոմունիստական պարտիան։ Տաիլանդի կոմունիստական պարտիան ստեղծված է 1928 թվականին։ 1951 թվականից նա գտնվում է ընդհա-



տակում։ Կոմունիստները մեծ ազդեցություն ունեն խոշորագույն պրոֆմիութենական կազմակերպություններում, ինչպես նաև գյուղացիական, երիտասարդական և ուսանողական պրոգրեսիվ կազմակերպություններում։

Կոմունիստական պարտիան պայքարում է ամերիկյան իմպերիալիստների և ներքին ռեակցիայի դեմ ընդհանուր ազգային ճակատ կազմակերպելու համար։

Տաիլանդի և Սովետական Միության միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատվեցին 1941 թվականին, բայց փաստորեն դրանք գոյություն ունեն միայն 1946 թվականի դեկտեմբերի 31-ից։

Մեծ է Տաիլանդի ժողովրդի սերը և համակրանքը դեպի Սովետական Միությունը։ Անցյալ տարվա դեկտեմբերին Բանգկոկում կազմակերպված ցուցահանդեսում Սովետական պավիլիոնը գտնվում էր ուշադրության կենտրոնում։ Տաիլանդի աշխատավորները արտահայտեցին իրենց համակրանքը դեպի Սովետական Միությունը, նրա ժողովրդական տնտեսության զարգացումը, դեպի խաղաղության և անվտանգության համար մղվող պայքարը։

Տաիլանդի խաղաղասեր ժողովուրդը չնայած ռեակցիոն կառավարողների դավաճանական հակազգային քաղաքականությանը, ակտիվորեն պայքարում է հանուն խաղաղության, ընդդեմ իմպերիալիստական պլանների իրագործմանը։

Ս. ՊԱՊՅԱՆ

---

# ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

*ՀՈՒՆԳԱՐԻԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎ— Հունգարական ժողովրդական ռեսպուբլիկայի պետական իշխանության բարձրագույն օրգանն է։*

*Պետական ժողովը ընտրվում է 4 տարի ժամանակով, ընտրությունները կատարում են ընտրողները՝ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ։ Ընտրված դեպուտատները հաշվետու են ընտրողների առաջ, ընդորում ընտրողները կարող են նրանց ետ կանչել։ Պետական ժողովը իրավունք ունի ընդունել օրենքներ, հաստատել պետական բյուջե և ժողովրդատնտեսական պլան, ընտրել ժողովրդական ռեսպուբլիկայի նախագահություն և մինիստրների խորհուրդ, կազմակերպել և լիկվիդացնել մինիստրություններ, սահմանել և փոփոխել մինիստրությունների ֆունկցիաները, ընդունել որոշում պատերազմի կամ խաղաղության մասին, հայտարարել ներում։ Մինիստրների խորհուրդն իր գործունեության համար պատասխանատու է Պետական ժողովի առաջ և պարտավոր է իր աշխատանքների մասին պարբերաբար հաշվետվություն տալ նրան։ Հունգարական ժողովրդական ռեսպուբլիկայի Գերագույն դատարանը, Գերագույն դատարանի նախագահը, գլխավոր դատախազը նույնպես ընտրվում են Պետական ժողովի կողմից։*

*Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկան մշտապես ունենալով ՍՍՌՄ անշահախնդիր և եղբայրական օգնությունը, օգտագործելով նրա փորձը, իր երկրում կառուցում է սոցիալիզմ։*



*ՄԱՐԻՈՆԵՏԱՅԻՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ— Մարիոնետկա— բառացիորեն նշանակում է տիկնիկ, որին ուզած ձևով խաղացնում են թելերի օգնությամբ, հատկապես տիկնիկային թատրոններում։ Քաղաքականության մեջ տիկնիկային կառավարություն կոչվում են այն կառավարությունները, որոնք գործում են ուրիշի թելադրանքով, ի վնաս իրենց սեփական ժողովրդի։*

*Մարիոնետային կամ տիկնիկային կառավարությունները հնազանդ կերպով կատարում են իմպերիալիստական խոշոր տերությունների կամքը, հանդիսանում են նրանց ձեռքին մի գործիք՝ աշխատավորներին ավելի դաժանորեն շահագործելու համար։ Տիկնիկային կառավարություններին ատելությամբ և անվստահությամբ է վերաբերվում հենց իր երկրի ժողովուրդը և մյուս ազատասեր ժողովուրդները։ Օրինակ, մարիոնետային տիպիկ կառավարություն է Լի Սին Մանի կառավարությունը Հարավային Կորեայում։ Ինչպես հայտնի է, Լի Սին Մանը համաշխարհային երկրորդ պատերազմից հետո ամերիկյան իր տերերի օգնությամբ ԱՄՆ-ից տեղափոխվեց Կորեա։ Հարավային*

Կորեայի պրեզիդենտի կոչում նա ստացավ ոչ թե կորեական ժողովրդի կողմից, այլ ամերիկյան օկուպացիոն իշխանությունների կողմից։ Նաստրկամտորեն կատարում է վաշինգտոնյան իր տերերի կամքը։ Նրանց ղեկավարությամբ Լի Սին Մանը բորբոքեց արյունահեղ պատերազմ, որը մեծ տառապանքներ պատճառեց կորեական ժողովրդին։

Մարիոնետային կառավարություն է նաև «կայսր» Բաո Դայի կառավարությունը Վյետնամում, որը կազմակերպվել է ֆրանսիական գաղութարարների միջոցներով ու ղեկավարությամբ և ծառայում է ամերիկյան ու ֆրանսիական իմպերիալիստների շահերին։ Բաո Դայը օգնում է օտարերկրյա իմպերիալիստներին գաղութային պատերազմ մղելու Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի դեմ։

ԱՄՆ-ի ռեակցիոն կառավարողները ամեն կերպ բորբոքում են պատերազմը Վյետնամում։ Նրանք միաժամանակ վարում են այնպիսի քաղաքականություն, որպեսզի դուրս մղելով ֆրանսիացիներին՝ իրենք զավթեն Վյետնամը, Պատեթ-Լաոն և Կամբոջը։

ԲԵՆԻԼՅՈՒՔՍ— Բելգիայի, Նիդերլանդների, Լյուքսեմբուրգի կրճատ անունը։ Այդ երեք երկրների միացյալ անունը մեկ բառով կոչվեց այն ժամանակ, երբ նրանց միջև կնքվեց մաքսային միություն։

Այժմ Բենիլյուքսը տնքում է ամերիկյան իմպերիալիստների լծի տակ։ 1952 թվականի մայիսին ԱՄՆ-ի ճնշմամբ Ֆրանսիայի, Իտալիայի, Արևմտյան Գերմա-



նիայի և Բենիլյուքսի երկրների կառավարությունները ստորագրեցին այսպես կոչված Փարիզյան պայմանագիրը, որը նախատեսում է ստեղծել «Եվրոպայի պաշտպանական միավորում», «Եվրոպական բանակ»։ Դրանով ամերիկյան իմպերիալիստները զրկում են Բենիլյուքսի երկրներին իրենց ազգային բանակը տնօրինելու իրավունքից և վերականգնում են գերմանական միլիտարիզմը։

ՎԱԼՅՈՒՏԱ— Դրամական միավոր— դրամական շրջանառության հիմնական միջոց, (ռուբլի, դոլար, ֆրանկ և այլն)։ Հաճախ վալյուտա է կոչվում նաև արտասահմանյան դրամը։ Կապիտալիստական երկրներում, հատկապես ԱՄՆ-ում, վալյուտան մի միջոց է շահագիտական նպատակներով ուրիշ երկրների դրամական շրջանառության վրա ազդելու, նրանց վալյուտայի կուրսը արժեքազրկելու կամ բարձրացնելու համար։ Կապիտալիստական խմբավորումները վալյուտային քաղաքականության, վալյուտային ինտերվենցիայի և վալյուտային սահմանափակումների միջոցով միջամտում են ուրիշ երկրների ներքին գործերին։

ՍՍՌՄ վալյուտան— ռուբլին— արմատապես տարբերվում է կապիտալիստական վալյուտայից։ Նա ծառայում է մեր երկրի տնտեսական անկախության և նրա շահերի համար։ Սովետական ռուբլին իր մեջ պարունակում է 0,222168 գրամ մաքուր ոսկի, նա ամենակայուն վալյուտան է աշխարհում, որը ապահովված է ոչ միայն ոսկու պաշարներով, այլև ապրանքների այն վիթխարի քանակությամբ, որ գտնվում է պետության ձեռքում։

Պտ. խմբագիր՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 14 1954 г.

ՎՖ 11693 Պատվեր 618 Տիրաժ 7860

Գլխպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան
Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։